Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 17 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՏՎԱԾ ԽՈՍՏՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ . . . . . . . . 1

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— *Մարտական ագիտացիա հանուն ստանձնած պարտավորությունների կատարման* . . . . . . . 19

Նյութեր զրույցների համար

Ն. ԿՈՐՈԼԵՎ.— *Տանկիստների Օրը* . . . 21

*«Տանկիստների Օրը» զրույցների պլան* . . 35

Ա. ԽՈՍՐՈԵՎ.— *Ստալինյան մրցանակի լաուրեատները* . . . . . . . . 37

Միջազգային թեմաների շուրջը

Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ.— *Դանուբի նավագնացության ռեժիմի նոր կոնվենցիան* . . . . . 43

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։

# ՄԵԾ ՍՏԱԼԻՆԻՆ ՏՎԱԾ ԽՈՍՏՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ անշեղորեն կենսագործելով մեծ Ստալինի ցուցումները, տարեց-տարի վիթխարի նվաճումներ է ձեռք բերում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում.*

*Բոլշևիկյան մամուլը ամեն օր բերկրալի լուրեր է հաղորդում մեր մեծ Հայրենիքի անծայրածիր դաշտերից։ Կոլխոզային գյուղացիության անձնվեր աշխատանքը հաղթանակի փառքով է պսակվում։ Կոլխոզային դաշտերում աճեցվեց առատ բերք։ Սոցիալիստական գյուղի աշխատավորները հպարտության վեհ զգացումով են զեկուցում սիրելի առաջնորդին ստանձնած պարտավորությունների կատարման մասին։*

*Բերքահավաքի հաջող ընթացքի, հացամթերումների բարձր տեմպի մեջ մենք նորից ու նորից տեսնում ենք կոլխոզային կարգե-*

րի հզորությունը, կոլտնտեսային գյուղացիության ստեղծագործական ակտիվությունը և քաղաքական հասունությունը, սոցիալիստական մրցության մեծագույն և կենսարար ուժը։

Օրերս «Պրավդան» տպագրեց Ուկրաինական ՍՍՌ-ի ռապորտն ընկեր Ստալինին։ Ռապորտում ասված է. «Ուրախ ենք զեկուցելու Ձեզ, թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ, որ Ուկրաինական ՍՍՌ-ի կոլխոզները, սովխոզները, գյուղացիական տնտեսությունները 1948 թվի սեպտեմբերի 3-ին, ժամկետից շուտ, մեկ ամիս և յոթ օր առաջ, քան անցյալ տարի, կատարեցին հացամթերումների պետական պլանը։

Պետությանը հանձնված է 115 միլիոն փութ հացահատիկ ավելի, քան 1947 թվին և 33 միլիոն փութ ավելի, քան նախապատերազմյան 1940 թվին...

Ուկրաինայի կոլխոզները, սովխոզները, գյուղացիական տնտեսությունները պարտավորություն են ստանձնել պլանից դուրս հանձնել առնվազն 31 միլիոն 600 հազար փութ հացահատիկ»։

Ժամկետից շատ շուտ իրենց պարտավորությունները կատարեցին Ղրիմի մարզի կոլխոզները և սովխոզները, որոնք այս տա-



րի 11 միլիոն փութ հացահատիկ ավելի հանձնեցին, քան 1947 թվին։ Ջրավարարվելով դրանով, Ղրիմի մարզի կոլխոզներն ու սովխոզները պարտավորվեցին պետությանը լրացուցիչ հանձնել ոչ պակաս մեկ ու կես միլիոն փութ հացահատիկ։

Ժամկետից շուտ, սեպտեմբերի 2-ին, հացամթերման պլանը կատարեց նաև մեր ռեսպուբլիկան։ Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը և գյուղատնտեսության բնագավառի աշխատավորները պատվով կատարեցին ընկեր Ստալինին տված խոստումը։

Սովետական բազմամիլիոն ժողովուրդը մեծ գոհունակությամբ է ընդունում Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ղրիմի, Կուբանի, Դոնի, Ստավրոպոլի, Հայկական ՍՍՌ-ի և մյուս ռեսպուբլիկաների ու մարզերի գյուղատնտեսության աշխատավորների հաղթանակների լուրերը։ Մեր հայրենասեր ժողովուրդը այդ աշխատանքային պանծալի հաղթանակի մեջ տեսնում է Սովետական Հայրենիքի, Լենին-Ստալինի պարտիայի, ժողովուրդների մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի նկատմամբ սոցիալիստական գյուղի աշխատավորների անհուն նվիրվածության ևս մի վառ վկայություն։

«Հացամթերումների պլանի կատարումը,— դա գյուղատնտեսության զարգացման մեջ արդեն ձեռք բերված հաջողությունների հանրագումարն է: Բայց դա միաժամանակ նոր հաջողությունների պայքարի սկիզբն է: Մեզ սպասում են անհետաձգելի շատ գործեր: Պետք է պայքար մղել պլանից դուրս հացահատիկ հանձնելու պարտավորությունները կատարելու համար: Պետք է պայքար մղել գյուղատնտեսական ամբողջ տարին հաջողությամբ ավարտելու համար» («Պրավդա»):

Հայկական ՍՍՌ կոլխոզնիկները, կոլխոզնիկուհիները, սովխոզների, ՄՏ կայանների աշխատավորները և գյուղատնտեսության մասնագետները ընկեր Ստալինին գրած նամակում վճռական խոսք տվին մեծ առաջնորդին՝ 1948 թվին ավարտելու ժողովրդական տնտեսության հնգամյա պլանով նախատեսված տեխնիկական կուլտուրաների ցանքատարածության ընդլայնումը և այս բնագավառում ևս հասնել բերքատվության բարձր ցուցանիշների: Բազմաթիվ առաջավոր կոլխոզներ, հարյուրավոր բրիգադաներ և օղակներ պարտավորվեցին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքել 300—510 փութ բամբակի հում, 100—150 փութ



ծխախոտ, 3.000—4.200 փութ շաքարի ճակնդեղ, 160—200 ցենտներ խաղող և այլն:

Ռեսպուբլիկայի բամբակագործները, ճակնդեղագործները և ծխախոտագործները առաջնորդին տված խոստումը պատվով կատարելու համար իրենց քրտնաջան աշխատանքով աճեցրել են տեխնիկական կուլտուրաների առատ բերք: Այժմ նրանք թևակոխել են բարձր բերքի համար մղվող պայքարի ամենապատասխանատու շրջանը՝ տեխնիկական կուլտուրաների բերքահավաքի շրջանը: Բամբակացան շրջաններն արդեն մոտ հազար տոննա բամբակ են հանձնել պետությանը: Մինչև սեպտեմբերի 5-ը ծխախոտի բերքահավաքի պլանը կատարվել է մոտ 40 տոկոսով, օրերս կսկսվի նաև շաքարի ճակնդեղի բերքահավաքը:

Տեխնիկական կուլտուրաների բերքահավաքի գործում Արտաշատի, Կոտայքի, Ղափանի, Միկոյանի շատ կոլխոզներ աշխատանքի կազմակերպվածության խրախուսելի օրինակներ են տալիս: Արտաշատի շրջանի Նորաշենի կոլխոզի պարտկազմակերպության նախաձեռնությամբ, անցյալ տարվա փորձի հիման վրա, կոլխոզներում ծավալվել

է օրական երկու հարյուր կիլոգրամ բամբակ
հավաքողների սքանչելի շարժումը:

Այդ շարժումը լայն արձագանք է գտել
նաև ռեսպուբլիկայի մյուս բամբակացան
շրջաններում: Էջմիածնի շրջանի Ներքին
Ջեյվա գյուղի կոլխոզի բարձր բերքի օղա-
կավարուհի Ս. Արշակյանը բամբակի պլան-
տացիաներում աճեցրել է առատ բերք: Այժմ
նա ձեռնամուխ է եղել այդ բերքի հավաք-
մանը և օրական շանաքում է 260 կիլոգրամ
բամբակ, կատարելով 6,5 արտադրական
նորմա:

Տեխնիկական կուլտուրաների բերքահա-
վաքի այս վճռական ու պատասխանատու
շրջանում մեծ է մեր գյուղական ագիտատո-
րի անելիքները, նրա դերը: Ժամանակին—
առանց ձգձգումների սկսել տեխնիկական
կուլտուրաների բերքահավաքը, կատարել
այն կարճ ժամկետում և առանց կորստի,
բարձր կազմակերպվածությամբ պետությա-
նը հանձնել բարձրորակ բամբակ, ծխախոտ,
խաղող, ճակնդեղ և գյուղատնտեսական այլ
մթերքներ—այդ նշանակում է մինչև վերջ և
պատվով կատարել առաջնորդին տված
խոստումը:

Գյուղական ագիտատորի մարտական
խնդիրն է լայնորեն օգտագործել հացահա-



տիկի բերքահավաքի ու պետական պարտա-
վորությունների կատարման դրական փոր-
ձը: Ագիտատորը անձնական օրինակով և
բոլշևիկյան կենդանի, կրակոտ ու համոզիչ
խոսքով պետք է բորբոքի գյուղատնտեսու-
թյան բնագավառի յուրաքանչյուր աշխատա-
վորի, ոտքի հանի և ամբողջապես օգտա-
գործի նրանց ուժն ու եռանդը տեխնիկական
կուլտուրաների բերքահավաքը բարձր որա-
կով, բոլշևիկյան կազմակերպվածությամբ
կատարելու, պետական պարտավորություն-
ները ժամկետից շուտ կատարելու և գերա-
կատարելու համար:

Տեխնիկական կուլտուրաների բերքահա-
վաքի և պետական պարտավորությունների
կատարման այս եռուն շրջանում պետք է ա-
վելի ևս լայնորեն ծավալել սոցիալիստական
մրցությունը բրիգադաների, օղակների և ա-
ռանձին կոլխոզնիկների միջև: Մրցության
արդյունքները պետք է արտացոլել ցուցա-
դրական տախտակներում, պատի թերթե-
րում, «կայծակներում»: Ագիտատորները ի-
րենց զրույցների ժամանակ պետք է տարա-
ծեն առաջավոր կոլխոզնիկների, բրիգադա-
ների, օղակների փորձը և միևնույն ժամա-
նակ վճռականապես մերկացնեն լոդրերին,

որոնք չեն ցանկանում ազնվորեն աշխատել կոլխոզում։

Ողջ աշխատանքը բերքահավաքի ժամանակ պետք է կատարել բարձր տեմպերով, չկորցնելով և ոչ մի օր։ Ոչ մի դեպքում չպետք է մոռանալ կատարվող աշխատանքի որակը, կորուստների կանխումը։ Բամբակի, ծխախոտի, խաղողի, ճակնդեղի յուրաքանչյուր կիլոգրամը պետության համար մեծ արժեք է ներկայացնում, ավելանում է մթերքների պաշարը ազգաբնակչության համար և հումքինը՝ արդյունաբերության համար։

Սովետական կառավարության Հրամանագրերը կոլխոզնիկների, ՄՏ կայանների, սովխոզների աշխատողներին բարձր բերք ստանալու համար Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, հսկայական դեր կատարեցին գյուղատնտեսության հետպատերազմյան վերելքի համար մղվող պայքարում։

Ագիտատորների խնդիրն է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը հասցնել յուրաքանչյուր կոլխոզնիկի գիտակցությանը, պատմել նրանց այն հսկայական հոգատարության մասին, որ ցուցա-



բերում են մեր պարտիան և սովետական իշխանությունը կոլխոզային կարգերի ամրացման համար։

Բերքահավաքի ժամանակին և բարձրորակ կատարումը և գյուղատնտեսական մթերքների պետական պարտավորությունների ժամկետից շուտ կատարումը ռեսպուբլիկայի կոլխոզների առաջնահերթ խնդիրն է։

Գործի դնենք մեր ողջ ուժերը գյուղատնտեսական տարին օրինակելիորեն փակելու, պատվով կատարելու ընկեր Ստալինին տված մեր խոստումը ու դրանով իսկ նպաստելու հետպատերազմյան Ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու մեծ գործին։

---

## ՄԱՐՏԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱ ՀԱՆՈՒՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ

*Բոլշևիկյան պարտիայի հիմնադիրներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը միշտ էլ բացառիկ նշանակություն են տվել քաղաքական ագիտացիային: Աշխատավորական լայն մասսաների կոմունիստական դաստիարակության կարևորագույն միջոցներից մեկը հանդիսանում է բոլշևիկյան պարտիայի քաղաքական ագիտացիան: Քաղաքական ագիտացիայի մարտական խնդիրը կայանում է նրանում, որպեսզի մեր պարտիայի իմաստուն քաղաքականությունը, այն հոյակապ խնդիրները, որոնք դրվում են մեր հայրենիքի առջև, հասցնեն աշխատավորական ամենալայն խավերի խորը գիտակցությանը և նրանց մոբիլիզացնեն հանուն այդ խնդիրների կատարման:*

*Լենինի-Ստալինի մեծ պարտիայի գաղափարները աշխատավորական լայն զանգ-*



*վածներին հասցնելու, նրանց դաստիարակելու համար բացառիկ են ագիտատորների դերը և անելիքները: Վ. Ի. Լենինը պահանջում էր այնպիսի ագիտատորներ, որոնք քաղաքականապես պատրաստված են և ի վիճակի են պարզ ու հասարակ լեզվով մասսային պարզաբանել պարտիայի քաղաքականությունը և բանվորներին հետաքրքրող հարցերը:*

*Ի. Վ. Ստալինը սովորեցնում է, որ անհրաժեշտ է քաղաքական և տնտեսական աշխատանքները բոլշևիկորեն զուգակցել միմյանց հետ: «Մենք չենք կարող,— ասում է ընկեր Ստալինը,— հեռանալ տնտեսությունից, ինչպես որ չենք կարող հեռանալ քաղաքականությունից... Եվ նա, ով մտածում է մեր գործնական աշխատանքում տնտեսությունը անջատել քաղաքականությունից, տնտեսական աշխատանքը ուժեղացնել քաղաքական աշխատանքի նվազեցման գնով, կամ, ընդհակառակը, քաղաքական աշխատանքն ուժեղացնել տնտեսական աշխատանքի նվազեցման գնով,— նա անպայման փակուղու մեջ կընկնի»:*

*Լենինական քաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունները, իրենց աշխատանքի հիմքում դնելով ընկեր*

Ստալինի ցուցումները, հասան այն բանին, որ լրջորեն սկսեցին բարելավել մասսայական-քաղաքական աշխատանքը աշխատավորության մեջ։

Պարտիական սկզբնական կազմակերպությունները քաղաքական ագիտացիան ամենասերտ կերպով կապում են այսօրվա մեր պրակտիկ խնդիրների հետ։ Այսպես օրինակ,— Լենինական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների ու տրանսպորտի բանվորները, բանվորուհիները, ինժեներները, տեխնիկներն ու ծառայողները, դիմեցին Սովետական Հայաստանի արդյունաբերության ու տրանսպորտի աշխատողներին ծավալելու սոցիալիստական մրցություն, որպեսզի հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանները կատարվեն մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձի օրը՝ 1948 թվի նոյեմբերի 7-ը։

Լենինականի պարտիական կազմակերպությունները տեխնիկական - կազմակերպական միջոցառումների հետ միասին կոնկրետ կերպով նշել են աշխատավորական լայն մասսայի մեջ կատարվող քաղաքական ագիտացիայի խնդիրները, որոնք սերտ կեր-



պով կապված են ստանձնած պարտավորությունների հետ և խորապես նպաստում են նրանց ժամանակին և բարձր որակով կատարելու գործին։

Բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության քաղաքականությունը բանվորներին ու բանվորուհիներին, ինժեներներին ու տեխնիկներին պարզաբանելու հետ միասին, մեր ագիտատորները կոնկրետ կերպով ցույց են տալիս, թե այդ քաղաքականությունից անմիջապես բխող ինչպիսի խնդիրներ են դրված քաղաքի աշխատավորության առջև։ Տեքստիլ կոմբինատի Գործվածքային ֆաբրիկայի № 4 կորպուսի ագիտատոր ընկ. Մկրտչյան Կարապետը բանվորների հետ զրույցներ անցկացնելիս միշտ պարզաբանում է այն միտքը, որ հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու մեծ նպատակից ելնելով՝ Լենինականի բանվորները, բանվորուհիները, ինժեներները, տեխնիկներն ու ծառայողները պարտավորվել են ընթացիկ տարվա պլանը կատարել 1948 թվի նոյեմբերի 7-ին, բարելավել թողարկվող արտադրանքի որակը, աշխատանքի արտադրողականությունը պլանի համեմատությամբ բարձրացնել 10 տոկոսով և արտադրանքի ինքնարժեքը պլանից դուրս

իջեցնել 3 տոկոսով։ Վառելանյութի ծախսումը կրճատել 5 տոկոսով, էլեկտրաէներգիան 10 տոկոսով, պետական դոտացիան իջեցնել 4-5 միլիոն ռուբլով։

Այս խնդիրները նա կապում է իրենց կորպուսի առանձին բանվորների ու բանվորուհիների սոցիալիստական մրցության պայմանագրերով վերցրած պարտավորությունների կատարման հետ։ Այդ նպատակով ընկ. Մկրտչյանը իր զրույցի մեկ օրը նվիրեց կատարման ստուգման հարցի նշանակությանը։ Սկսելով իր հերթական զրույցը ագիտատոր Մկրտչյանը ասաց, որ Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն է տվել կատարման ստուգմանը։ Վ. Ի. Լենինը ասել է. «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստացի կատարումը, դրանում, դարձյալ դրանում, այժմ միմիայն դրանում է ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը»։

Քաղաքական-մասսայական աշխատանքի հաջող կազմակերպումը տվեց իր կոնկրետ արդյունքները։ Տարիներ շարունակ հետ մնացող, պետական պլանները չկատարող Տեքստիլ կոմբինատը դուրս է եկել ծանր վիճակից և ընթացիկ տարվա ութ ամիսների պլանը կատարել է 103,9 տոկոսով։ Վ. Մ. Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկան



անցած ութը ամիսների պլանը կատարեց 122,5 տոկոսով։ Այս ֆաբրիկայի մի շարք բանվորներ ու բանվորուհիներ արդեն կատարել են հետպատերազմյան հնգամյա պլանը և աշխատում են 1951 թվի հաշվին, իսկ քաղաքում ավելի քան 120 բանվոր-բանվորուհիներ արդեն կատարել են իրենց հնգամյա պլանը։

Այսպես օրինակ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, Վ. Մ. Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի բանվորուհի Անգին Արսենյանը սոցիալիստական մրցության մեջ մտնելով Կիրովաբադի Ս. Օրջոնիկիձեի անվան Տեքստիլ կոմբինատի մանարան ֆաբրիկայի բանվորուհի Ս. Իսաևայի հետ, հաղթող դուրս եկավ մրցությունից և ժամանակից շուտ կատարեց իր հնգամյա պլանը։

Առաջավոր բանվորների նվաճումները հանդիսացան քաղաքի ագիտատորների զրույցների նյութ։ Պետք է նշել, որ հնգամյակը կատարած բանվորների աշխատանքի փորձին նվիրված զրույցները անցան չափազանց հետաքրքիր և տվեցին հսկայական արդյունք։ Բավական է հիշատակել, որ Լենինական քաղաքի միութենական նշանակու-

թյուն ունեցող ձեռնարկությունները ութ ամսվա պլանը կատարեցին 107,5 տոկոսով, միութենական-ռեսպուբլիկական ֆաբրիկաները և գործարանները 100,8 տոկոսով, տեղական արդյունաբերական ձեռնարկությունները 126,5 տոկոսով, երկաթուղային տրանսպորտի օբեկտները բոլոր ցուցանիշների գծով հաջողությամբ կատարեցին իրենց ստանձնած պարտավորությունները։

Ինչպես ՀԿ(բ)Պ Լենինականի քաղաքային կոմիտեն, այնպես և պարտիական սկզբնական կազմակերպությունները սիստեմատիկ կերպով քննության են առնում քաղաքական աշխատանքների վիճակը, լսում են ագիտատորների զեկուցումները և կատարում փորձի փոխանակում։ Քաղաքական ագիտացիան պարտիական կազմակերպությունների գործունեության կարևորագույն զենքն է դարձել, որը մեծապես նպաստում է մեր քաղաքի զարգացման գործին։

Այժմ քաղաքում գործում են 157 ագիտկոլեկտիվներ, որտեղ ընդգրկված են 1147 ագիտատորներ։ Ագիտատորների հետ կատարվող աշխատանքների ընթացքում պարտիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են դարձնում նորի զգացումի



և սկզբունքայնության զարգացման վրա։ Ինչպես հայտնի է, բարձր են գնահատվում այն մարդիկ, որոնք ունեն նորի արտակարգ զգացմունք։ Նորի զգացումը բոլշևիկի թանկագին հատկանիշն է։ Նորի զգացումը ագիտատորին ուժ է տալիս ըմբռնելու աշխատավորների ստեղծագործ աշխատանքի շնորհիվ կուտակված հարուստ փորձը։ Իսկ ագիտատորը առաջավոր մարդկանց փորձը փոխանակելու համար ամենից առաջ սերտ կապ պետք է ունենա մասսայի հետ, ոչ միայն պետք է սովորեցնի, այլ սովորի, ունկնդրի մասսային։

Պարտիական սկզբնական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են դարձնում մասսայի հետ սերտ կապ պահպանելու, նրանց ունկնդրելու վրա։

Զրույցների ընթացքում աշխատավորական լայն զանգվածների մեջ պարտիայի և կառավարության որոշումների մասսայականացման հետ միասին, ագիտատորները հաշվի են առնում արտադրության առաջավոր մարդկանց աշխատանքի փորձը, ունկնդրում նրանց արժեքավոր առաջարկությունները։ Աշխատանքի այս մեթոդը Լենինականի պարտիական սկզբնական կազմակերպությունները ընդօրինակել են հերոսական Լե-

նինգրադի պարտիական կազմակերպու-
թյունների աշխատանքի փորձից։

Տեքստիլ կոմբինատի Գործվածքային
գործարանի պարտիական կազմակերպու-
թյան բյուրոյի քարտուղար ընկ. Հ. Հարու-
թյունյանը սիստեմատիկ կերպով զբաղվում
է ամեն մի ագիտատորի աշխատանքով և
նրանց ցույց տալիս անհրաժեշտ օգնու-
թյուն ու ղեկավարություն։ Դրանով պետք է
բացատրել ցուցադրական ագիտացիայի
հաջող դրվածքը Գործվածքային գործարա-
նում։ Գործվածքային գործարանում ամեն
մի մեքենայի վրա գրված է յուրաքանչյուր
բանվորի առանձնած պարտավորությունը,
իսկ աշխատանքի վերջում ցույց է տրվում
օրվա առաջադրանքի կատարման պատկե-
րը։ Ագիտացիոն աշխատանքի այս մեթոդը
հետաքրքրություն է առաջ բերել բանվորնե-
րի մեջ, բարձրացել է նրանց քաղաքական
ակտիվությունը։

Մսի կոմբինատի ագիտատորների նախա-
ձեռնությամբ ոտքի հանվեցին պաղպաղակի
ցեխի բանվորները և կարողացան ապահո-
վել ցեխի պլանների կատարումը։

Քաղաքական ագիտացիան դնելով պար-
տիական կազմակերպությունների ուշադրու-
թյան կենտրոնում, այն օգտագործելով որ-



պես մասսաների կոմունիստական դաս-
տիարակության հզոր զենքերից մեկը, Լենի-
նականի պարտիական կազմակերպությունը
հասավ այն բանին, որ քաղաքի ֆաբրիկա-
ներում, գործարաններում և ձեռնարկու-
թյուններում եռում է ստեղծագործական
աշխատանքը, իրական պայքարը հնգամյա
տարեկան պլանի ժամկետից շուտ կատար-
ման։

Սակայն սխալ կլինի կարծել, որ Լենի-
նականի բոլոր ձեռնարկություններում իր
բարձրության վրա է դրված քաղաքական
ագիտացիան։

Դեռևս ունենք մի շարք ֆաբրիկաներ ու
գործարաններ (Շինարարական կոմբինատ,
Փայտամշակման ֆաբրիկա և այլն), որտեղ
պարտիական կազմակերպությունները չեն
կարողացել անտեսական ու քաղաքական
աշխատանքները միմյանց հետ զուգակցել,
չեն բարելավել քաղաքական ագիտացիայի
գործը, որի հետևանքով այդ ձեռնարկու-
թյունների բանվորներն ու բանվորուհիները
սիստեմատիկ կերպով հնարավորություն չեն
ունենում ծանոթանալ մեր կյանքի առօրյա
խնդիրների հետ։ Շատ հաճախ ագիտատոր-
ների զրույցները անցնում են անհետաքրք-
քիր, չեն հասնում իրենց նպատակին։ Այդ

բացատրվում է ամենից առաջ ագիտատորի անբավարար աշխատանքով և պարտիական կազմակերպության անբավարար ղեկավարությամբ։ Ագիտատորի յուրաքանչյուր զրույցը պետք է լինի նպատակասլաց։ Ագիտատորը նախապես պետք է պատրաստվի իր զրույցին և իմանա թե ինչպիսի եզրակացությունների պիտի բերի իրեն լսողներին։

Մ. Ի. Կալինինը մասսայական աշխատանքների ասպարեզում աշխատող բոլշևիկներին խորհուրդ էր տալիս տիրապետել հռետորական արվեստին, իմանալ կենդանի ու հետաքրքիր զրուցելու ձևերը։ Մ. Ի. Կալինինը սովորեցնում էր, որ մասսայական աշխատանքի ասպարեզում գործող ընկերներից առաջին հերթին պահանջվում է տիրապետել զեկուցելու, զրույց անցկացնելու, դասախոսություն կարդալու արվեստին։

Քաղաքական զրույցները և զեկուցումները պետք է լինեն գրավիչ, պետք է հուզեն ունկնդիրներին, նրանց մեջ առաջացնեն նոր հարցեր ու խոհեր, մոբիլիզացնեն աշխատավորներին ստանձնած պարտավորությունների անթերի կատարման համար։

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(ՀԿ(բ)Պ Լենինականի քաղկոմի քարտուղար)

---

## ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ

Ամեն տարի սեպտեմբերի երկրորդ կիրակի օրը, մեր երկիրը տոնում է Տանկիստների Օրը: Այդ տոնը սահմանվել է 1946 թվականին, Հայրենական Մեծ պատերազմում սովետական զրահատանկային և մեքենայացված զորքերի աչքի ընկնող մարտական ծառայությունները, ինչպես նաև ՍՍՌՄ Զինված Ուժերի ամրապնդման գործում տանկաշինարարների մատուցած ծառայությունները նշանավորելու համար։

Սովետական զրահատանկային և մեքենայացված զորքերի հաջողություններն ու հաղթանակները—դա սովետական ժողովրդի հաջողություններն ու հաղթանակներն են, մեր սոցիալիստական պետության տնտեսական ու ռազմական հզորության ամրապնդման նկատմամբ բոլշևիկների պարտիայի ու ընկեր Ստալինի մշտական հոգատարության հետևանքը։

Զրահատանկային և մեքենայացված զորքը—զորքերի ամենաերիտասարդ տեսակն է: Չնայած նրան, որ տանկն առաջին անգամ հնարվել է Ռուսաստանում, բայց ցարական բանակը սպառազինման համար տանկեր չուներ: Ռուսական ռազմա-տեխնիկական մտքի տաղանդավոր ներկայացուցիչները դեռևս առաջին համաշխարհային պատերազմից առաջ, հանդես են եկել զենքի նոր տեսակի մի շարք ինքնուրույն և խիզախ նախագծերով, այդ նոր զենքը հետագայում կոչվել է տանկ: Տանկի առաջին նախագիծը առաջարկվել է ինժեներ Մենդելեևի—նշանավոր ռուս քիմիկոս Դ. Ի. Մենդելեևի տղայի կողմից: Բայց այդ գյուտը, ինչպես նաև շատ ուրիշները, չի օգտագործվել ցարական չինովնիկների բյուրոկրատիզմի, ռուս ժողովրդի ուժին չհավատալու, արտասահմանի նկատմամբ ստրկամտություն ունենալու պատճառով: Տանկաշինարարության ճանապարհին հսկայական խոչընդոտ է հանդիսացել նաև հին, ցարական Ռուսաստանի տնտեսական հետամնացությունը:

Սովետական Բանակը պահանջվող քանակությամբ ժամանակակից տանկերով զինելու համար հարկավոր էր ունենալ սեփական մետալուրգիա, խոշոր մեքենաշինություն,



հզոր վառելանյութի մշակման ձեռնարկություններ: Հարկավոր էր ունենալ նաև կոնստրուկտորների, ինժեներների, տեխնիկների կադրեր և տանկաշինարար բանվորներ:

Այդ խնդիրները հաջողությամբ լուծվեցին երկրի ինդուստրացման քաղաքականության շնորհիվ, որն իրագործեց բոլշևիկյան պարտիան ընկեր Ստալինի ղեկավարությամբ: Ստալինյան պատմական հնգամյակների իրականացման շնորհիվ մեր երկիրը դարձավ հզոր ինդուստրիալ-կոլխոզային տերություն: Մեզ մոտ ստեղծվեց առաջավոր տանկաշինության արդյունաբերություն ամուր նյութական բազայով, տանկաշինարարների սովորեցրած ու տաղանդավոր կադրերով: Դա ապահովեց զրահատանկային ուժերի արագ ծավալումը:

Սովետական տանկաշինության զարգացումը ընթացել է ընկեր Ստալինի նշած ուղիով: Ընկեր Ստալինի ղեկավարությամբ դաստիարակվեցին կոնստրուկտորների տաղանդավոր կադրեր, որոնք ստեղծեցին առաջնակարգ, աշխարհում լավագույն՝ «Տ—34» և «ԿՎ» տանկեր: Մեր կառավարությունը, պարտիան, ընկեր Ստալինը ցուցաբերել ու ցուցաբերում են մեծ հոգատարու-

թյան տանկիստների կադրեր—մեքենաների շարքային վարողից մինչև բարձր որակյալ ռազմական մասնագետներ պատրաստելու գործին, կադրեր, որոնք ընդունակ լինեն կառավարելու տանկային զորամասերը մարտի դաշտում: Տանկային ուսումնարանների ցանցի կողքին, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ստեղծվեց զրահատանկային և մեքենայացված զորքերի Ռազմական ակադեմիան—սպաների և գեներալների հիանալի կադրերի դարբնոցը:

Այսպիսով, Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին Սովետական Զինված Ուժերն ունեին ամենալավ տանկերն աշխարհում և սովորեցրած տանկիստների ու տանկաշինարարների կադրեր:

Հարկավոր է, սակայն հաշվի առնել, որ ՍՍՌՄ-ի վրա իրենց ուխտադրուժ հարձակման պահին, հիտլերականներն ունեին մի քանի անգամ ավելի շատ տանկեր, քան մեր բանակը, որովհետև ֆաշիստական Գերմանիայի համար աշխատում էր ոչ միայն իր սեփական տանկային արդյունաբերությունը, այլև նրա կողմից օկուպացված Չեխոսլովակիայի, Բելգիայի, Հոլանդիայի ու Ֆրանսիայի արդյունաբերությունը:

Ընկեր Ստալինը սովետական ժողովրդին



կոչ արեց մի քանի անգամ ավելացնել տանկերի արտադրությունը և զրոյի հասցնել գերմանացիների գերակշռությունը տանկերի ասպարեզում:

Առաջնորդի կոչը ջերմ արձագանք գտավ սովետական մարդկանց սրտերում: Մեր երկրի արևելքում, որտեղ, շնորհիվ բոլշևիկյան պարտիայի իմաստուն կանխատեսության, խաղաղ շինարարության տարիներին ստեղծվեց հզոր արդյունաբերական բազա, ճակատամերձ գոտիներից էվակուացված բոլոր ձեռնարկությունները հնարավորություն ստացան արագ կերպով ծավալելու արտադրությունը: Կոմունիստական պարտիայի կողմից համախմբված հերոսական սովետական թիկունքը կարգավորեց սպառազինության մասսայական արտադրությունը, այդ թվում նաև «Տ—34» և «ԻՍ» հրաշալի տանկերի արտադրությունը: 1943 թվականի սկզբին գերմանացիների գերակշռությունը տանկերի ասպարեզում լրիվ լիկվիդացվեց: Պատերազմի վերջին երեք տարիներին մեր արդյունաբերությունն ամեն տարի տալիս էր ավելի քան 30 հազար տանկեր, ինքնագնացներ, զրահամեքենաներ: Միայն Լենինգրադից Ուրալ էվակուացված Կիրովյան գործարանը, Հայրենական Մեծ պատերազմի

ընթացքում արտադրել է 18 հազար տանկ և ինքնագնաց սարքվածքներ։ Ուրալյան մի ուրիշ գործարան—Ստալինի անվան գործարանը, պատերազմի ժամանակ թողարկել է 35 հազար տանկ։

Սովետական ամբողջ ժողովուրդը իր մասնակցությունն է ունեցել մեր բազմաքանակ տանկային պարկի ստեղծման գործում։ Հետևելով տամբովյան և սարատովյան կոլխոզնիկների կոչին, Սովետական Միության աշխատավորները տանկերի կառուցման համար մուծեցին մոտ 6 միլիարդ ռուբլի, ավելի քան 100 հազար ռուբլի ոսկով և մոտ 200 կլգ. զանազան ոսկեղեն։ Սովետական ջերմ հայրենասիրության օրինակ է հանդիսանում ուրալյան կամավորական զորամասի կազմակերպումը։ Ձևավորելով այդ զորամասը, Ուրալի աշխատավորները կարճ ժամկետում լրիվ կերպով ապահովեցին նրան պլանից դուրս արտադրված տանկերով և բոլոր տեսակի սպառազինությամբ։ Նրանք զորամաս ուղարկեցին իրենց լավագույն զավակներին։

Հայրենական Մեծ պատերազմի դաժան փորձությունների տարիներին ընկեր Ստալինը անմիջականորեն ղեկավարում էր մեր տանկաշինությունը, անձամբ զբաղվում



էր զրահատանկային զորքերի ձևավորմամբ և սպառազինումով։ Ընկեր Ստալինի ցուցումներով մեր գործարանները կատարելագործում էին մարտական մեքենաները ռազմաճակատի պահանջներին համապատասխան։ Անընդհատ կատարելագործվում էր զրահն ու սպառազինումը, բարձրանում էր մեքենաների մարտունակությունը։

Բանակը զրահատանկային տեխնիկայով հագեցնելու ստալինյան ցուցումների իրականացման գործում նշանակալից դեր են խաղացել ընկեր Ստալինի մերձավոր դինակիցներ— Վ. Մ. Մոլոտովը ու Լ. Պ. Բերիան։

***

Սահմանագծերի վրա տեղի ունեցած հենց առաջին ընդհարումներում, սովետական տանկային մասերը ցուցաբերեցին իրենց բարձր մարտական վարպետությունը։ Մոսկվայի տակ մղվող մարտերում տանկիստներն իրենց պսակեցին անթառամ փառքով։ Այստեղ հատկապես աչքի ընկավ 4-րդ տանկային բրիգադան, որն ընկեր Ստալինի հրամանով վերակազմվեց որպես Առաջին Գվարդիական տանկային բրիգադա։

Բոլոր ռազմաճակատների մարտական

գործողություններում մեծ դեր խաղացին խոշոր զրահատանկային և մեքենայացված միավորումները։ Զորքերի մյուս տեսակների հետ փոխգործակցությամբ, նրանք մեկը մյուսի հետևից կործանում էին թշնամու խմբավորումները, որոնք համառ դիմադրություն էին ցույց տալիս բոլոր. սահմաններում։

Տանկերի մեծ մասսայի օգտագործման կլասիկ օրինակ հանդիսացավ Ստալինգրադյան մեծ ճակատամարտը։ Կատարելով Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի ստրատեգիական նախագծումները, սովետական զորքերը աչքի ընկնող հաղթանակ տարան մեծ պատերազմների պատմության մեջ։ Այստեղ, հերոսական Ստալինգրադի պատերի տակ, ցուցադրվեց զորքերի տեսակների փոխգործակցության չգերազանցված ստալինյան արվեստը, հզոր տեխնիկայի (հատկապես հրետանու) հարվածների և սրընթաց մանևրի զուգակցում, որի հիմքը հանդիսանում էին զրահատանկային և մեքենայացված միավորումները։ Գործելով գրոհող սովետական զորքերի թևերում, տանկային և մեքենայացված կորպուսները մտան ճեղքման գլխավոր հարվածների ուղղության մեջ և Կալաչի շրջանում



արագ մանևրով փակեցին շրջապատման օղակը։ Գերմանական 300 հազարանոց բանակի մի մասը ոչնչացվեց, իսկ մյուս մասը գերի վերցվեց։

Մյուս մեծ ճակատամարտը—Կուրսկի տակ—նույնպես տեղի ունեցավ զորքերի և մարտական տեխնիկայի հսկայական կուտակումով։ Այդ ճակատամարտը, որը գերմանա-ֆաշիստական բանակը կանգնեցրեց կատաստրոֆի առաջ, բնորոշ էր տանկային խոշոր մարտերով։ Երկու կողմերից այստեղ մասնակցում էին մոտ 10 հազար տանկեր։ Համառ ակտիվ պաշտպանական մարտերում հյուծելով ու արյունաքամ անելով ֆաշիստական ընտիր դիվիզիաներին, սովետական զորքերը ճեղքեցին հակառակորդի ռազմաճակատը և անցան հարձակման, որը նոր, պանծալի հաղթանակ բերեց թշնամու նկատմամբ։ Սովետական փառապանծ տանկիստներն այդ մարտերում ցուցաբերեցին բացառիկ կայունություն, խիզախություն և չգերազանցված հմտություն։

Սովետական զորքերի հարվածների տակ, թշնամին ունեցավ տերիտորիայի, կենդանի ուժի և տեխնիկայի մեծ կորուստ։ Պատերազմը ձգձգելու, Դնեպրի մյուս կողմում ամրանալու նրա փորձերը ամբողջովին ձա-

խողվեցին։ Հետապնդելով թշնամուն, սովե-
տական պանծալի տանկիստները հետևակի
հետ միասին անցան Դնեպրը և նրա արև-
մտյան ափում ստեղծեցին պլացդարմ, որով
և ապահովվեցին հետագա հաղթական հարձա-
կումը։ Մեր տանկային զորամասերը ամե-
նուրեք հետապնդելով գերմանացիներին,
հնարավորություն չէին տալիս նրանց ամ-
րանալ վաղօրոք պատրաստած սահմանա-
գծերում, համարձակորեն թափանցում էին
թշնամու թիկունքը, խախտում նրա կո-
մունիկացիաները։

Սովետական Միության կրկնակի Հերոս
ընկ. Դրագունսկին մի մարտական էպիզոդ
է օրինակ բերում, որը վառ կերպով խոսում
է մեր տանկիստների խիզախության, հմտու-
թյան և զինվորական արիության մասին։

Տանկային զորամասի առաջ խնդիր էր
դրված—հակառակորդի թիկունքում գրավել
խճուղային ճանապարհների կարևոր հան-
գույցը—Պավլոշը։ Կապիտաններ Կովալյո-
վի և Ցյոդորովի (այժմ երկուսն էլ Սովետա-
տական Միության Հերոսներ են) ստորաբա-
ժանումները գտնվելով զորամասի առաջա-
պահ գծում, ընդհարվեցին հակառակորդի
տանկային գնդի հետ և գլխովին ջախջախե-



ցին այն, գերի վերցնելով մոտ 500 հոգի։
Պավլոշը գրավվեց։

Գտնվելով թշնամու թիկունքում, Կովալյո-
վի ու Ցյոդորովի ստորաբաժանումների
տանկիստները խորտակում էին դեպի Ցաս-
տով գնացող թշնամու էշելոնները, որտեղ
այդ ժամանակ տեղի էին ունենում կատաղի
մարտեր, պայթեցնում էին կամուրջները,
կաշկանդում գերմանացիների տանկային
խոշոր ուժերը։

Տանկիստները յոթ օր պահեցին Պավլո-
շը, ետ մղելով թշնամու մի շարք գրոհներ։
Այնուհետև խիզախ տանկիստները իրենց
բրիգադային միանալու համար ճեղքե-
ցին հակառակորդի դասավորությունները։
Ստալինյան տասը խորտակիչ հար-
վածները 1944 թվականին—վճռական հաղ-
թանակների տարում, որոնց հետևան-
քով ջախջախվեցին և շարքից հան-
վեցին թշնամու մինչև 120 դիվիզիաներ,
հանդիսացան ճեղքելու փայլուն արվես-
տի, խոր մանևրի, սրընթաց հետա-
պնդման ու շրջապատման ստալինյան գի-
տության տրիումֆը։ Բոլոր այդ հարվածնե-
րի ընթացքում սովետական տանկիստները,
սովետական մյուս բոլոր մարտիկների հետ

միասին գործում էին արիությամբ և խիզա-
խությամբ։

Բեռլինի համար մղվող վերջնական ճա-
կատամարտում նորից իր ամբողջ մեծու-
թյամբ երևան եկավ սովետական մարտիկ-
ների, այդ թվում նաև տանկիստների մաս-
սայական հերոսությունն ու չգերազանցված
հմտությունը։ Ավելի քան 6.300 տանկեր
մասնակցում էին Բեռլինի համար մղվող
վերջնական մարտերին։ Տանկային և մեքե-
նայացված զորքերը, զորքի մյուս տեսակնե-
րի հետ միասին շրջապատեցին հակառա-
կորդի բեռլինյան խմբավորումը։ Տանկերը
մեծ դեր էին խաղում փողոցային մարտերի
ընթացքում։ Նրանք հրետանու հետ միասին
օգնում էին հետևակին գրավելու թաղամաս-
թաղամասի հետևից, հաղթանակի դրոշը
բարձրացնելու ռայխստագի վրա։

Սովետական տանկիստներն անթառամ
փառքով պսակեցին իրենց նաև իմպերիա-
լիստական ճապոնիայի դեմ մղված պատե-
րազմում։ Մեր զրահատանկային զորքերը
սերտորեն փոխգործակցելով զորքի մյուս
տեսակների հետ, թշնամու խորը էշելոնաց-
ված պաշտպանության առկայության և տե-
ղանքի ծանր պայմաններում, վճռական



հարված հասցրին ճապոնացիների Կվան-
տունյան բանակին։

Սովետական կառավարությունը լայն կեր-
պով նշեց պանծալի տանկիստների ու տան-
կաշինարարների մատուցած ծառայություն-
ները։ 250 հազար տանկիստներ պարգևա-
տրված են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալ-
ներով։ 1.120 տանկիստների շնորհվել է Սո-
վետական Միության Հերոսի կոչում։ Նրանց
թվումն են զրահատանկային զորքերի մար-
շալներ Ռիբալկոն և Բոգդանովը, գեներալ-
ներ Կատուկովը, Լելյուշենկոն, Արխիպովը,
Յակուբովսկին, Գուսակովսկին, Ցոմիչյովը
և ուրիշները։ 9 հազար տանկաշինարարներ
պարգևատրված են շքանշաններով ու մե-
դալներով։ Շատ կոնստրուկտորներ արժա-
նացել են Սոցիալիստական Աշխատանքի
Հերոսի կոչմանը և Ստալինյան մրցանակ-
ների։

***

ՍՍՌՄ բոլոր Զինված Ուժերի հետ միա-
սին, սովետական զրահատանկային զորքերը
արթուն կանգնած են ժողովրդի ստեղծագործ
աշխատանքի պաշտպանության, խաղաղու-
թյան ու անվտանգության գործի պաշտպա-
նության դիրքերում։ Տանկիստներն ուսում-

նափրում են պատերազմի փորձը, տիրապետում են մարտական տեխնիկային, կատարելագործում են իրենց վարպետությունը: Քիչ գերազանցիկներ, տանկ վարողներ ու կրակի վարպետներ չեն դաստիարակվել հետպատերազմյան տարիներին: Զորացրված տանկիստներն այժմ սոցիալիստական աշխատանքի օրինակներ են ցուցաբերում ձեռնարկություններում ու կոլխոզներում: Նրանցից շատերն արդեն աշխատանքի արիության համար արժանացել են կառավարական նոր պարգևների:

Տանկիստների Օրը համաժողովրդական տոն է հանդիսանում, որովհետև բոլշևիկյան պարտիայի կողմից համախմբված սովետական ժողովուրդը, ընկեր Ստալինի ղեկավարությամբ ստեղծել է մեր հզոր Զինված Ուժերը, հագեցնելով նրանց առաջնակարգ տեխնիկայով, այդ թվում նաև լավագույն տանկերով աշխարհում: Սովետական մարդիկ Տանկիստների Օրը կնշեն հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում նոր հաջողություններով, հանուն մեր սիրելի Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման:

Փոխգնդապետ՝ Ն. ԿՈՐՈԼԵՎ

# „ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ" ԶՐՈՒՑՑՆԵՐԻ ՊԼԱՆ

1. Մեր երկրի առաջնությունը տանկ ստեղծելու գործում (առաջին տանկի հնարումը ռուս ինժեներ Մենդելեևի կողմից դեռ մինչև առաջին համաշխարհային պատերազմը):

2. ՍՍՌՄ-ը ամենաառաջավոր տանկաշինարարական երկիրն է: Երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման բոլշևիկյան պարտիայի գլխավոր գծի կենսագործումը ընկեր Ստալինի ղեկավարությամբ: Հզոր ծանր ինդուստրիայի ստեղծումը, առաջավոր մեքենաշինությունը ապահովեցին Հայրենական տանկաշինության ծավալումը: Պարտիայի և ընկեր Ստալինի հոգատարությունը տանկիստների, կոնստրուկտորների, տեխնիկների կադրեր և տանկաշինարար բանվորներ աճեցնելու նկատմամբ:

3. Զրահատանկային զորքերը Հայրենական Մեծ պատերազմում: Ընկեր Ստալինի կոչը՝ վրայի հավասարեցնել գերմանացիների գերակշռությունը տանկերի ասպարեզում: Պարտիայի կողմից բոլոր ուժերի ու միջոց-

ների մոբիլիզացումը այդ կոչն իրականացնելու համար: Թիկունքի հերոսական ջանքերը: Տանկային զորամասեր կառուցելու համար միջոցներ հավաքելու աշխատավորների հայրենասիրական շարժումը: Ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությունը՝ տանկերի մասսայական արտադրության, նրանց որակի հետագա բարելավման, խոշոր զրահատանկային միավորումների կազմակերպման գործում: Տանկերի ասպարեզում գերմանացիների գերակշռության լիկվիդացումը: Ստալինյան ռազմական գիտությունը: Տանկերի մեծ մասսայի օգտագործում: Խոշոր տանկային և մեքենայացված միավորումների առաջին գործադրումը Ստալինգրադյան ճակատամարտում: Ճակատամարտ Կուրսկի տակ: Զրահատանկային զորքերը վճռական հաղթանակների տարում (1944) և բեռլինյան մեծ մարտերում: Սովետական տանկերը իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղված պատերազմում:

4. Տանկիստների Օրը — տոնն է ամբողջ սովետական ժողովրդի, որը կոմունիստական պարտիայի և ընկեր Ստալինի ղեկավարությամբ ստեղծել է մեր հզոր Զինված Ուժերը, մեր առաջավոր զրահատանկային տեխնիկան:

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ՄՐՑԱՆԱԿԻ ԼԱՈՒՐԵԱՏՆԵՐԸ

Գիտության մեծ կորիֆեյ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի 60-ամյակը հավերժացնելու համար, մեր կառավարությունը սահմանել է Ստալինյան մրցանակներ, որոնք ամեն տարի շնորհվում են գիտության ու արվեստի ականավոր գործիչներին, արտադրության առաջավոր մարդկանց՝ նրանց կատարած աչքի ընկնող նվաճումների համար:

Ամեն տարի Ստալինյան մրցանակների շնորհումը դարձել է սովետական գիտության նվաճումների տրադիցիոն ստուգատես, համաժողովրդական տոն: Մեր երկրում գիտությունը շրջապատված է բոլշևիկյան պարտիայի, սովետական կառավարության, անձամբ ընկեր Ստալինի ուշադրությամբ ու հոգատարությամբ: Ընկեր Ստալինը սովետական գիտնականներին ոգեշնչում է ամենահամարձակ ստեղծագործական խիզախումների, մեր գիտությունը տանում է դեպի նորանոր հաղթանակներ: 1938 թվականի

մայիսի 17-ին, Կրեմլում, բարձրագույն դպրոցի աշխատողների ընդունելության ժամանակ արտասանած իր պատմական ճառում ընկեր Ստալինը ասաց.—«Գիտության ծաղկման կենացը, այն գիտության, որը չի պարսպվում ժողովրդից, ժողովրդից հեռու չի պահում իրեն, այլ պատրաստ է ծառայելու ժողովրդին, պատրաստ է ժողովրդին հաղորդելու գիտության բոլոր նվաճումները. որը սպասարկում է ժողովրդին ոչ թե հարկադրաբար, այլ կամավոր կերպով, հաճույքով»:

Սովետական գիտությունը հավատով ու ճշմարտությամբ ծառայում է ժողովրդի շահերին, երկրի արտադրողական ուժերի զարգացմանը, կոմունիզմի կառուցման գործին: Այդ պատճառով էլ սովետական գիտության գործիչները վայելում են ժողովրդի հարգանքն ու սերը:

Սովետական Միության և ամբողջ աշխարհին հայտնի անունների շարքում Ստալինյան մրցանակի լաուրեատների թվում մենք տեսնում ենք նաև պրակտիկայի մարդկանց— ստախանովականների, որոնք սիստեմատիկորեն բարձրացնում են մեր արդյունաբերության տեխնիկական մակարդակը, պայքարում աշխատանքի բարձր



արտադրողականության համար: Ամբողջ երկրին հայտնի են Մոսկվայի «Պարիժսկայա կոմունա» կոշիկի ֆաբրիկայի ձևող բանվոր՝ Վ. Մատրոսովի, ջուլհակուհիներ Մ. Վոլկովայի, Ա. Կաշչայեվայի, Ե. Տիբայեվայի, ինժեներներ Ա. Ենգիբարյանի, Ն. Գրիգորյանի, շախտյոր Զապորոժեցի և շատ ուրիշների անունները: Այդպիսի գործի մարդիկ են նաև ինժեներներ Մարիա Բաբաջանյանն ու Վալենտին Մինասյանը, որոնք մշակել են ապակու էլեկտրաեփման վառարանների նոր կոնստրուկցիա և եփման նոր մեթոդ, որի համար և սովետական կառավարությունը նրանց արժանացրել է Ստալինյան մրցանակի:

Սովետական Հայաստանի հարուստ հիդրոէներգետիկ ռեսուրսները հնարավորություններ են ստեղծում օգտագործել էլեկտրաէներգիան տեղական ապակու արտադրության կազմակերպման գործում: Հարկավոր էր սակայն գտնել ապակու եփման համար էլեկտրական էներգիայի օգտագործման մեթոդը, կառուցել միանգամայն նոր վառարաններ, որոնք լրիվ ապահովեին ապակու էլեկտրաեփման պահանջները:

Երկու երիտասարդ ինժեներների՝ Մ. Բաբաջանյանին ու Վ. Մինասյանին հանձնա-

բարվեց լուծելու այդ դժվարին, բայց հետաքրքիր ու պատվավոր խնդիրը։

Երիտասարդ ինժեներներին ոգեշնչում, ուժ ու եռանդ էր տալիս այն միտքը, որ ապակու եփման նոր տեխնոլոգիան կբազմապատկի տեղական ապակու արտադրությունը և դրանով մեծ օգուտներ կըտան մեր երկրի ժողովրդական տնտեսությանը։ 1935 թվի սեպտեմբերին, նրանք մեծ եռանդով գործի լծվեցին։ Համառ ու քրտնաջան աշխատանքի տարիներ անցան։ Ծավալվեց եռանդուն հետազոտական աշխատանք հատուկ փորձակայանում։ Եղան նաև անհաջողություններ, որոնք սակայն չէին վհատեցնում երիտասարդ մասնագետներին, որովհետև նրանք ներշնչված էին մեծ հավատով դեպի իրենց գործի հաղթանակը։ Ինժեներների, տեխնիկների, բանվորների կոլեկտիվը նրանց ղեկավարությամբ աշխատում էր համերաշխ ու մեծ ջանասիրությամբ։

Ապակու էլեկտրաեփման մեջ ամենակարևորը էլեկտրահաղորդ ցանցից ապակուն հաղորդվող էլեկտրոդների դիմացկունությունը՝ աշխատանքի տևողությունը երկարացնելն է։ Անհրաժեշտ եղավ բազմաթիվ անգամ փոխել էլեկտրոդների կառուցվածքը, նրանց սառեցման ձևը և մետաղի բա-



ղադրությունը։ Համառ աշխատանքը տվեց իր արդյունքը։ Տարեց-տարի բարելավվեց ու կատարելագործվեց ապակու էլեկտրաեփման տեխնոլոգիան և մեր սովետական համառ ինժեներներին հաջողվեց կառուցել այնպիսի վառարաններ, որոնք մեկ տոննա ապակու մասսա եփելու համար, փորձի նախկին վառարանների համեմատությամբ, ծախսում են 3 անգամ ավելի քիչ էլեկտրաէներգիա։ Այնուհետև նրանց աշխատանքը գնում էր վառարանների անընդհատ աշխատանքի տևողությունը երկարացնելու, որակը լավացնելու ուղղությամբ։

1943 թվականից Երևանի Քիմիական գործարանում գործում է այդ ինժեներների կոնստրուկցիայով կառուցված վառարանը, որը ապահովում է տնտեսության համար ապակյա ամանեղենի և լայն սպառման այլ տարրկաների արտադրությունը։ Վառարանը կառուցվել է Մարիա Բաբաջանյանի տեխնիկական հսկողության տակ։

Ապակու էլեկտրաեփման վառարանները ունեն մի շարք առավելություններ։ Ապակու եփման այդ մեթոդը պահանջում է է 3—4 անգամ ավելի քիչ ջերմություն, քան վառելանյութով գործող վառարանները։

էլեկտրական վառարաններում կարելի է ջերմությունը հասցնել 1.550 աստիճանից ավելի բարձր, ըստ Ցելսիուսի, որը շատ կարևոր է բարձրորակ ապակի ստանալու համար: Բարձրորակ ապակու ստացումը հնարավորություն կտա կազմակերպել էլեկտրական լամպերի, տեսապակիների (լինզա), լաբորատորային պարագաների և տեխնիկական նշանակություն ունեցող այլ իրերի արտադրությունը: Ապակու էլեկտրական վառարանի կառուցվածքը անհամեմատ պարզ է և պահանջում է փոքր ներդրում: Պարզ ու կատարյալ է նաև տեխնոլոգիական ռեժիմը: Այդ վառարանի օգտագործումով չափազանց թեթևանում են եփող բանվորների աշխատանքի պայմանները:

Ապակու էլեկտրական եփման տեխնոլոգիայի նշանակությունը և հեռանկարները մեծ են ոչ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև մեր երկրի ապակու, մասնավորապես հատուկ ապակու արտադրության համար:

Երիտասարդ մասնագետները չեն հանգստանում ձեռք բերածով, նրանք համառորեն պայքարում են նոր, ավելի կատարելագործված մեթոդների հասնելու համար:

Ա. ԽՈՍՐՈԵՎ

---

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ*

# ԴԱՆՈՒԲԻ ՆԱՎԱԳՆԱՑՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԻ ՆՈՐ ԿՈՆՎԵՆՑԻԱՆ

1948 թվի հուլիսի 30-ից մինչև օգոստոսի 18-ը Բելգրադում տեղի ունեցավ Դանուբի նավագնացության նոր կոնվենցիա մշակող միջազգային կոնֆերանսը:

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Դանուբի նավագնացությունը գտնվում էր Դանուբից հարյուրավոր և հազարավոր կիլոմետր հեռու գտնվող իմպերիալիստական տերությունների ձեռքում:

Ինչպես հայտնի է, Դանուբի կոնֆերանսը հրավիրվել էր չորս տերությունների— Սովետական Միության, Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի Արտաքին գործերի մինիստրների խորհրդի 1946 թվականի դեկտեմբերին Նյու-Յորքյան սեսիայի որոշման հիման վրա: Արտաքին գործերի մինիստրների խորհուրդը որոշեց, որ կոնֆերանսին մասնակցելու համար հրավիրվելու

են մերձդանուբյան երկրները և արտաքին գործերի մինիստրների խորհրդում ներկայացված մեծ տերությունները։

Բելգրադի կոնֆերանսի քաղաքական, պատմական նշանակություն ունեցող արդյունքներին և որոշումներին ծանոթանալուց առաջ, ուսանելի է համառոտակի վերհիշել Դանուբի պրոբլեմի պատմությունը։

Որպես Հարավ-Արևելյան Եվրոպայի խոշորագույն ջրային նավարկելի ուղի, Դանուբը տնտեսական-տրանսպորտային մեծագույն նշանակություն ունի մերձդանուբյան բազմաթիվ երկրների համար։ Դանուբ գետը սկիզբ է առնում Հարավային Գերմանիայի Շվարցվալդ լեռներից և մինչև ութ երկրների տերիտորիաներով հոսելով, Ռումինիայի և ՍՍՌՄ-ի սահմանների մոտ թափվում է Սև ծովը։ Դանուբի ընդհանուր երկարությունը հավասար է 2855 կիլոմետրի, որից նավարկելի մասը՝ 2569 կիլոմետր՝ Ուլմ քաղաքից մինչև գետաբերանը։ Դանուբ գետի ավազանը (իր վտակների ցանցի հետ միասին) ընդգրկում է մինչև 817000 քառ. կմ.։

Մերձդանուբյան երկրներից՝ Ավստրիայի, Չեխոսլովակիայի և Հունգարիայի համար Դանուբը ծով դուրս գալու միակ ջրային ուղին է, իսկ Հարավսլավիայի, Բուլղարիայի և



Ռումինիայի համար՝ առևտրա-տնտեսական կենսական նշանակություն ունեցող միջերկրային և ծովերի հետ կապող տրանսպորտային զարկերակ է հանդիսանում։ Մինչև պատերազմը Բուլղարիա բերվող ապրանքների 50 տոկոսը և Հարավսլավիա բերվող ապրանքների 30 տոկոսը փոխադրվում էր Դանուբի վրայով։ Գերմանիան իր տերիտորիայում ունենալով Դանուբ գետի վերին հոսանքը, որը ջրանցքով կապված է նրա ներքին մյուս գետերի հետ (Մայն-Հեննոս), միշտ էլ օգտագործել է Դանուբը Հարավ-Արևելյան Եվրոպայի երկրները տնտեսապես ներթափանցելու և իր արտաքին իմպերիալիստական զավթողական ծրագրերն իրագործելու համար։

Սովետական Միության բաղկացուցիչ մասը կազմող Ուկրաինական ՍՍՌ-ի սահմանը ավելի քան 160 կիլոմետր երկարությամբ անցնում է Դանուբի ափերով, նրա դելտայի՝ Կիլիյան բազուկը ամբողջապես անցնում է Ուկրաինայի տերիտորիայով, իսկ նրա կարևոր վտակներից մեկը՝ Պրուտ գետը իր ամբողջ երկարությամբ անցնում է ՍՍՌՄ-ի տերիտորիայով և նրա սահմաններով։

Հարավ-Արևելյան Եվրոպան իրենց տնտեսական, քաղաքական ազդեցությանը ենթար-

կելու, մերձդանուբյան երկրների գյուղա-
տնտեսական արտադրանքները և բնական
հարստությունները կողոպտելու, ինչպես նաև
այդ երկրներն իրենց ագրեսիվ պլանների
համար բազա ծառայեցնելու նպատակով,
արևմտյան Եվրոպայի իմպերիալիստական
մեծ տերությունները՝ Անգլիան, Ֆրանսիան,
Գերմանիան միշտ էլ ձգտել են տիրապետող
դիրք ձեռք բերել հզոր ջրային ուղու՝ Դանու-
բի վրա։ Կապիտալիստական մեծ պետու-
թյունների միջև ուժեղացող մրցակցությունը
և սրվող հակասությունները դրսևորվում էին
նաև Դանուբի համար մղվող պայքարում։
Ղրիմի պատերազմից հետո դաշնակիցները
Ռուսաստանից անջատեցին Բեսարաբիայի
մերձդանուբյան շրջանը (Իզմայիլի գավառը)
ցանկանալով նրան հեռու պահել Դանուբից։

1856 թվականի մարտին Փարիզի տրակ-
տատով Դանուբը «միջազգային գետ» հռչակ-
վեց։ Իսկ նրա նավարկությունը հսկելու հա-
մար կազմակերպվեց Դանուբի գետաբերանը
հսկող այսպես կոչված «Եվրոպական Դա-
նուբյան ժամանակավոր Հանձնաժողով». այդ
Հանձնաժողովը բաղկացած էր Մեծ Բրիտա-
նիայի, Ֆրանսիայի, Պրուսիայի, Սարդինիա-
յի (Իտալիա), Ռուսաստանի, Ավստրիայի
և Թյուրքիայի ներկայացուցիչներից։ Երկու



տարվա ժամկետով կազմակերպված այդ
Հանձնաժողովը շուտով դարձավ հարատև
գործող մի մարմին իր մեծաքանակ պաշ-
տոնյաներով, սեփական տորմիղով, փայա-
տոմսերով, փոխառություններով և այլն։
Անտես առնելով առափնյա պետությունները,
նա փաստորեն դարձել էր «պետություն մեջ
պետություն»։ 1878 թվին բեռլինյան կոնգրե-
սի ժամանակ դրսևորվեց Գերմանիայի աճող
ակտիվությունը Դանուբի համար մղվող պայ-
քարում, որն իր Բեռլին-Բաղդադ իմպերիա-
լիստական ագրեսիվ ծրագրի ստրատեգիայի
մեջ Դանուբին հատկացնում էր անհրաժեշտ
կարևոր տեղ։

Առաջին համաշխարհային պատերազմից
հետո, Դանուբի ավազանում իմպերիալիս-
տական խոշոր պետությունների միջև պայ-
քարը էլ ավելի սրվեց։ Գերմանիան պարտու-
թյան պատճառով դուրս էր եկել մրցողների
շարքից, իսկ Անգլիան, Ֆրանսիան և Իտա-
լիան ձգտում էին լիապես իրենց ենթարկել
դանուբյան երկրների տնտեսությունը, ո-
րոնց քաղաքականապես արդեն դարձրել էին
վասսալ տերություններ։ Օգնելով Ռումի-
նիային՝ Բեսարաբիան օկուպացնելու հա-
մար, Անգլիան, Ֆրանսիան և մյուս պետու-
թյունները ձգտում էին Սովետական Ռու-

ստատանին մեկուսացնել նաև Դանուբից։

1921 թվի հուլիսի 23-ին Փարիզում կնքվեց նոր կոնվենցիա, որտեղ գերիշխող և թելադրող դեր էին խաղում ոչ դանուբյան երկրները՝ Անգլիան և Ֆրանսիան։ Այս նոր կոնվենցիայով միջազգայնացված գետեր հայտարարվեցին Դանուբի խոշոր վտակները՝ Տիսան, Մարոշը, Դրավան, Մորավան և մյուսները։ Այդ կոնվենցիայի համաձայն կազմակերպվեց Դանուբի նավարկության հսկող երկու հանձնաժողով՝

1. Ծովային Դանուբի Հանձնաժողով, որը վերահսկելու էր գետաբերանից մինչև Բրաիլով քաղաքի գետամասը, և

2. Գետային Դանուբի Հանձնաժողով, որի վերահսկողությունը տարածվում էր Բրաիլով քաղաքից վերև՝ մինչև Ուլմ քաղաքի գետամասը։

Ծովային Դանուբի Հանձնաժողովը բաղկացած էր Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Ռումինիայի ներկայացուցիչներից։ Իսկ Գետային Դանուբի Հանձնաժողովի կազմի մեջ մտնում էին բոլոր մերձդանուբյան երկրներից մեկական ներկայացուցիչ (Գերմանիան ուներ 2 ներկայացուցիչ), ինչպես նաև մեկական ներկայացուցիչ ունեին Անգլիան, Ֆրանսիան ու Իտալիան։ Թե մեկ և թե



մյուս հանձնաժողովներում տերն ու տնօրենը հանդիսանում էին ոչ դանուբյան երկրները՝ Անգլիան ու Ֆրանսիան։ 1921 թվի Փարիզյան կոնվենցիային Սովետական Միությունը չէր մասնակցում։

Այսպիսով մոտ մեկ դար Դանուբի գետային նավարկությունը հսկելով և հսկայական օգուտներ քաղելով, Եվրոպական և Միջազգային Դանուբյան հանձնաժողովները ոչ Դանուբի գետաբերանը տիղմից մաքրեցին և ոչ էլ Երկաթյա-Դռներ գետամասում (ռումինա-հարավսլավական սահմանում) ժամանակակից հիդրոտեխնիկական սարքավորումներով բարենորոգող-կանոնավորող որևէ կապիտալ կառուցումներ կատարեցին։

1938 և 1939 թվերին միակողմանի համաձայնություններով Անգլիան և Ֆրանսիան հնարավոր դարձրին Գերմանիայի ազդեցության աճումը Դանուբի նավարկության վրա և Դանուբի ավազանում։ Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով վերացավ այդ կոնվենցիաների ու հանձնաժողովների ամեն մի գործունեությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, դանուբյան երկրների ժողովուրդների կյանքում սոցիալ-քաղաքական արմատական փոփոխություններ են տեղի ունեցել։ Սովե-

տական Բանկի օգնությամբ այդ երկրների ժողովուրդները ազատագրվեցին գերմանական ֆաշիզմի օկուպացիոն ծանր լծից և իրենց երկրներում ստեղծեցին նոր դեմոկրատիայի կարգեր։ Հսկայական չափերով աճել է Սովետական Միության քաղաքական դերը, լայնացել է դանուբյան երկրների հետ նրա տնտեսական գործունեությունը, որը նպաստում է այդ երկրների տնտեսական արագ զարգացման գործին։

Բելգրադի Դանուբյան կոնֆերանսը կոչված էր ստեղծված նոր քաղաքական-տնտեսական պայմաններին համապատասխան՝ նոր կոնվենցիա մշակելու համար։ Բելգրադի կոնֆերանսին մասնակցում էին դանուբյան պետությունները և Արտաքին Գործերի մինիստրերի Խորհրդի անդամ՝ ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան և Ֆրանսիան։ Կոնֆերանսի ամբողջ աշխատանքների ընթացքում դանուբյան երկրները, Սովետական Միության գլխավորությամբ հանդես էին գալիս փոքր պետությունների սուվերենությունը հարգելու և նրանց արդարացի իրավունքները մինչև վերջը հետևողականորեն պաշտպանելու, ընդհանուր խաղաղությունն ու պետությունների միջև փոխադարձ համագործակցությունը ամրապնդելու ոգով։ Այդ նույն ժամանակ



արևմտյան պետությունները նպատակ ունենալով ամեն կերպ ձգտել վերականգնելու 1921 թվի արդեն մեռած կոնվենցիան և նախկին անարդարացի ռեժիմը, դիմում էին ամեն տեսակ մանևրների, սպառնալիքների և շանտաժի. դրանով նրանք ցույց տվեցին, որ ոչինչ չեն սովորել և աշխատում են ոչինչ չըտեսնել այն խորը արմատական փոփոխություններից, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո տեղի է ունեցել ժողովուրդների կյանքում։ Կոնֆերանսը փակուղու առաջ կանգնեցնելու կամ տապալելու նրանց բոլոր փորձերը, վերջացան անհաջողությամբ. նրանք կրեցին քաղաքական-բարոյական խոշոր պարտություն։

Կոնֆերանսը քննության համար հիմք ընդունեց Սովետական Միության դելեգացիայի ներկայացրած կոնվենցիայի նախագիծը, որը լիապես համապատասխանում է դանուբյան երկրների շահերին ու դարերով փայփայած իղձերին։ Ելնելով այն հիմնական խնդրից, որ Դանուբը պետք է պատկանի դանուբյան երկրներին և ծառայեցվի նրանց պետական անկախության ամրացման ու տնտեսական բարգավաճման գործին, միաժամանակ հաշվի է առնված այլ ժողովուրդների հետ խաղաղ և տնտեսական

համագործակցության խնդիրը։ Կոնվենցիայի առաջին հոդվածում արձանագրված է.— «Նավարկությունը Դանուբ գետի վրա պետք է ազատ ու բաց լինի բոլոր պետությունների քաղաքացիների, առևտրանավերի և ապրանքների համար՝ նավահանգստային և նավարկման գանձումներին ու առևտրական նավագնացության պայմանների վերաբերմամբ հավասարության հիման վրա»։ Միաժամանակ նոր կոնվենցիայով արգելվում է ոչ դանուբյան օտար պետությունների ռազմանավերի մուտքը Դանուբի ջրերը։ Նախկին Եվրոպական և Միջազգային Դանուբյան հանձնաժողովների շենքերի ու նավահանգստային սարքավորումները հանձնվելու է դանուբյան նոր հանձնաժողովին։ Կոնվենցիան ուժի մեջ է մտնելու կոնֆերանսի մասնակից վեց տերությունների կողմից այն վավերացվելուց հետո։

Դանուբի նավագնացության նոր կոնվենցիան հրաժարվեցին ստորագրել ԱՄՆ-ի Անգլիայի և Ֆրանսիայի ներկայացուցիչները, բայց նա մեծ ոգևորությամբ հավանության արժանացավ և ստորագրվեց կոնֆերանսի դելեգատ մերձդանուբյան երկրների ներկայացուցիչների կողմից։

Սովետական Միության խ[illegible]



կան հետևողական քաղաքականությունը մի նոր, խոշոր հաղթանակ ևս ձեռք բերեց։ Նա փայլուն կերպով ցույց տվեց փոքր ժողովուրդների արդարացի շահերի հետևողական պաշտպանության, ժողովուրդների խաղաղ համագործակցության դրական մեծ պտուղները։

Այսուհետև Դանուբի հզոր ջրային արտերիան կծառայեցվի ժողովուրդների տնտեսական բարգավաճման, բարեկամական մերձեցման և խաղաղության ամրացման վեհ գործին։

Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 04192 Պատվեր № 623 Տիրաժ 9.300
Ստորագրված է տպագրության 10/IX 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора

